Առաքելյան, Բ. Ն. (1971) Հայկական պետականության վերականգնումը IX դարի վերջերին. Պատմա-բանասիրական հանդես, № 4 . pp. 27-40.

# ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄԸ IX ԴԱՐԻ ՎԵՐՋԵՐԻՆ*

ՀՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ Բ. Ն. ԱՌԱՔԵԼՅԱՆ

## 1. Հայկական պետականության վերականգնման նախադրյալների առաջացումը

*Ֆեոդալական հարաբերությունների զարգացումը արաբական խալիֆաթի երկրներում, հատկապես ժառանգական հողատիրության աստիճանական ամրապնդումը և ընդարձակումը, հիմք դարձան ֆեոդալական կենտրոնախույս ուժերի զորեղացման և, ընդհակառակը, պատճառ՝ խալիֆաթի կենտրոնական իշխանության թուլացման։ Դրանով տնտեսական և քաղաքական նախադրյալներ էին ստեղծվել տեղական անկախ իշխանությունների գոյացման համար։ Խալիֆաթի դեմ ծագած ապստամբությունները Եգիպտոսում, Իրաքում, Թոխարիստանում, Իրանում և այլուր, մասնավորապես, խուռամյանների ժողովրդական բնույթ ստացած ապստամբությունը Բաբեկի գլխավորությամբ, խարխլեցին արաբական խալիֆաթի հիմքերը։ Հենց այս ապստամբության տարիներին էր, որ խալիֆաթը տվեց առաջին ճեղքերը և առաջացան Թահիրյանների պետությունը՝ Խորասանում (821) և Դուլեֆյանների իշխանությունը՝ Ատրպատականում՝ Համադան կենտրոնով (825)։*

*Անկախության համար պայքար էին մղում արաբական խալիֆաթի լծի տակ ընկած համարյա բոլոր ժողովուրդները։ Թուլացած և դեպի անկում ընթացող խալիֆաթը արդեն ի վիճակի չէր ո՛չ կանխել, և ո՛չ էլ ճնշել ամենուրեք ծագող ապստամբությունները։ Ավելին. նա հարկադրված էր ճանաչել առաջացած տեղական իշխանությունները, ջանալով գեթ ձևականորեն պահպանել իր գերիշխանությունը նրանց վրա։*

*Հայաստանում իրենց ժառանգական հողատիրական իրավունքները վերականգնել և ընդարձակել էին Բագրատունիները, որոնց տիրույթները փռվում էին Տարոնից մինչև Սպեր, Շիրակ և Աշոցք, Արծրունիները, որոնք տիրացել էին Վանա լճի արևելյան և հարավային ավազանին, Սյունյաց նախարարները, որոնք Սյունիքին միացրել էին Գեղարքունյաց երկիրը՝ Սևանա լճի ավազանը, ինչպես նաև Գողթն ու Նախճավան գավառները։*

*Արաբական խալիֆաթը դեռևս VIII դ. վերջերին ճանաչել էր Բագրատունի Աշոտ Մսակերի իշխանությունը Հայաստանի վրա, բայց արաբական ոստիկանի իշխանությանը ընթարկված վիճակում։ Աշոտի մահից հետո հայոց իշխանի պաշտոնն անցավ Տարոնի տեր Բագարատ Բագրատունուն, որին խալիֆ ալ-Մամունը (813—839) ճանաչեց իբրև «հրամանատար և իշխան իշխանաց հայոց»[1]*

* Սույն հոդվածը «Հայ ժողովրդի պատմության» հրատարակության պատրաստված III հատորի առաջին գլուխն է։

[1] Հովհաննես կաթողիկոս Դրասխանակերտցի, Պատմություն Հայոց, Տփղիս, 1912, էջ 115։ Այսուհետև՝ Հովհաննես Դրասխանակերտցի։

կամ բատրիկ ալ-բատարիկա (պատրիկների պատրիկ), ինչպես անվանում է Տաբարին[2]։ Բագարատի եղբայր Սմբատ Բագրատունին, որը տիրում էր Շիրակին, դարձավ երկրի սպարապետը[3]։ Այսպիսով, արաբական իշխանությունների կողքին և նրանց ենթակա վիճակում առաջացան Հայաստանի տեղական վարչական և ռազմական իշխանությունները, որոնք անցան Բագրատունիների ձեռքը՝ բաժանված նրա երկու ճյուղերի միջև։ Դա, իհարկե, պատահական չէր, այլ պայմանավորված էր երկրում ստեղծված իրադրությամբ։ Հայաստանի հարավում ստեղծվել էր Արծրունիների և Տարոնի Բագրատունիների խմբավորումը, որի մեջ մտնում էին Արծրունի 16 իշխաններ՝ Աշոտ Արծրունու գլխավորությամբ, Տարոնի Բագրատունիները՝ Բագարատ Բագրատունու գլխավորությամբ, ինչպես և Ամատունյաց, Գնունյաց, Մոկաց իշխանները։ Նրանք դաշինք էին հաստատել արաբական տիրապետության դեմ կռվելու համար։ Բագարատի իշխանաց իշխան դառնալը նկատելիորեն զորացրեց այս խմբավորման դիրքերը։

Երկրի հյուսիս-արևելքում առաջացել էր նախարարական մի այլ խմբավորում, որի մեջ մտնում էին Շիրակի Բագրատունիները, Սյունյաց իշխանները և ուրիշներ։ Այս խումբը, որի գլուխ կանգնած էր Սմբատ սպարապետը, ավելի զորեղ էր, մանավանդ կաթողիկոսական աթոռն էլ հյուսիսում էր գտնվում, իսկ Վրաստանի և Աղվանքի իշխանների հետ հաստատված էին սերտ բարեկամական կապեր։

Հիշյալ խմբավորումների միջև հաստատուն միասնություն չկար, ընդհակառակը, նկատվում էին որոշ հակասություններ, որոնք դրսևորվում էին, առաջին հերթին, նրանց վարած քաղաքականության տարբերությամբ։ Եթե Բագարատ Բագրատունին, որոշ զգուշավորությամբ հանդերձ, գլխավորում էր արաբական բանակների անմիջական ներխուժմանը մշտապես ենթակա հարավի իշխանների ապստամբական, մարտական տրամադրությունները՝ սերտորեն գործակցելով հարավի հայ իշխանների, մանավանդ Արծրունիների հետ, ապա Սմբատ Բագրատունին զսպում էր հյուսիսի նախարարներին և ձգտում էր երկրի ինքնուրույնությանը հասնել արաբների հետ լեզու գտնելու և նրանցից քայլ առ քայլ զիջումներ ձեռք բերելու եղանակով։

Այնուհանդերձ, երկու խմբավորումներն էլ ձգտում էին թոթափել արաբական լուծը։

Հայկական իշխանությունների դիրքերի ուժեղացմանը հետևեց հարկերի վճարման անկանոնությունը և քանակի նվազեցումը։ Հայոց իշխանների ժառանգական հողատիրության վերականգնումը մի կողմից և հարկերի նվազեցումը մյուս կողմից նպաստեցին երկրում սկսվող տնտեսական վերելքին և ապահովեցին ապստամբների նյութական հնարավորությունները։ Մինչդեռ արաբական խալիֆայությունը թուլանում էր վերջնականորեն։ Ջաֆր ալ-Մութավաքիլ խալիֆի (847—861) գահը կործանվելու աստիճան երերուն էր, ուստի նա ավելի պինդ կառչեց թուրք վարձկան զորքից, գործադրեց ամեն տեսակի անողոք ու անսքող բռնություններ։ Ավելին. նա բորբոքեց մուսուլմանական հոգևորականության և ժողովրդի կրոնական մոլեռանդությունը՝ հանդես գալով խուռամյանների ապստամբության ու դավանաբանական վեճերի հետևանքով խախտված ուղղափառության պաշտպանի դերում։ Խալիֆը հալածեց ամեն

[2] Tabari, III, ١٤٣٨, 13—14.

[3] Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 113—114։

մի ազատ միտք, նաև այն գիտնականներին, որոնք պնդում էին, թե Ղուրանը երկնքից չի իջել, այլ մարդիկ են ստեղծել։ Եթե դեռևս Օմար խալիֆի օրոք մշակված մի շարք կանոններ, որոնցով իսլամին չհետևող ժողովուրդները շատ բաներում ստորադրվում էին իսլամի հետևորդներին և ստորացվում, արդեն զանց էին առնված, ապա Մութավաքիլ խալիֆը կարգադրեց վերականգնել և խստագույնս գործադրել այդ կանոնները[4]։

Այս միջոցառումները ավելի ևս սրեցին ներհակությունները Արաբական խալիֆաթի և նվաճված երկրների միջև։ Արաբական տիրապետությունից ազատագրվելու պայքարը Հայաստանում թևակոխել էր իր վերջին վճռական փուլը և դրսևորվում էր ժողովրդական հուժկու ապստամբությունների ձևով։

Ապստամբությունը բռնկեց Հայաստանի հարավում, որտեղ Բագարատ Բագրատունու և Արծրունյաց մյուս իշխանների գլխավորությամբ ջախջախվեցին արաբական Ալայ Սավաֆի (հայ աղբյուրներում Ծովափի կոչված) և Մուսա իբն Զուրարայի հրամանատարությամբ Վասպուրական և Տարոն ներխուժած արաբական բանակները։

Ծանր պարտության բոթն ստանալով, Մութավաքիլ խալիֆը բորբոքվում է «իբրև դբոց հնոցի»,— ասում է պատմիչը,— և իր խորհրդականների հետ վճռում է վերացնել հայկական իշխանությունները՝ զրկելով նրանց իրենց ժառանգական տիրույթներից և իշխանությունից[5]։ Այդ նպատակով խալիֆը մեծ բանակ է ուղարկում Հայաստան Յուսուֆ զորավարի գլխավորությամբ։ Յուսուֆի բանակը Վասպուրականի վրայով ներխուժում է Բզնունիք և այստեղից էլ Տարոն, գրավելով Մուշ քաղաքը։

Յուսուֆը մտադիր էր գարնանը, օրերը տաքանալուն պես, սրով ու գերությամբ իրականացնել հայ իշխանությունները ոչնչացնելու, արաբական տիրապետությունը ամրապնդելու և երկրում արաբ գաղթականություն բնակեցնելու ծրագիրը։ Հայ ժողովրդի համար ճակատագրական այս ձմռանը, սակայն, քնած չէին Սասուն-Խույթի լեռնականները։

Խութեցիներն ու սասունցիները[6] Հովնան Խութեցու (Թոռնիկի որդի Հովնան), ինչպես նաև Բագարատի որդիներ Դավթի (արքայիկ) և Աշոտի գլխավորությամբ ձմեռով հարձակվում են Մուշում ամրացած և գյուղերը ցրված արաբական բանակի վրա, պաշարում են և գլխովին ջախջախում[7]։

Չի փրկվում նաև ինքը՝ Յուսուֆ զորավարը, որը թաքնվել էր Մշո եկեղեցու գմբեթի տակ։ Հենց այստեղ էլ նրան գտնում է մի խիզախ խութեցի և սպանում աշտերի հարվածով։

Սասունցիների ապստամբությունը Հովնան Խութեցու գլխավորությամբ և արաբական բանակի ջախջախումը խոշոր արձագանքներ գտան և խոր հետ-

---

4 H. Daghbaschian, Gründung des Bagratiden Reiches durch Aschot Bagratuni, Berlin, 1893, էջ 12—13։ Լեո, Հայոց պատմություն, հատ. Բ, Երևան, 1947, էջ 440—441։

5 Թովմա Արծրունի, Պատմութիւն տանն Արծրունեաց, Թիֆլիս, 1917, էջ 196։

6 Ուսումնասիրողները Թովմա Արծրունու նկարագրած խութեցիներին նույնացնում են Հերոդոտի հիշատակած ալարոդների կամ ուրարտացիների հետ (տե՛ս J. Markwart, Sudarmenien und Tigrisquellen, Wien, 1930, էջ 229-230, Լեո, Հայոց պատմություն, հատ Բ, էջ 445—446, Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Բ, մաս Բ, էջ 233)։

7 Beladhuri, ed. J. de Goeje, Leiden, 1863—1866, էջ 15, տե՛ս նաև Белазори, Книга завоевания стран, перевод П. Жузе, Баку, 1927, էջ 22։

քեր թողեցին հայ ժողովրդի հիշողության մեջ. դրանք կազմեցին այն կորիզը, որի շուրջը հյուսվեց «Սասնա ծռեր» հռչակավոր ժողովրդական հերոսական էպոսը։

Յուսուֆի անփառունակ վախճանից հետո, երբ Հայաստանում, ինչպես նաև Վրաստանում ու Աղվանքում նոր թափով ծավալվեց ապստամբությունը, Մութավաքիլ խալիֆը զորահավաք կատարեց և իր բանակի հրամանատարներին հանձնարարեց. «Ելեք հայոց աշխարհի վրա սովով ու սրով, և գերությամբ, երկրի իշխաններին, կողմնակալ տերերին, կուսակալներին, ազատներին և ազատորդիներին փութով մեզ հասցրեք՝ կապանակալ, և ապա դուք տիրեցեք երկրին՝ բնակվելու համար, և թող այդ երկիրը ժառանգություն լինի ձեզ և ձեր զավակներին»[8]։

Հայաստան ուղարկվեց մի մեծ բանակ՝ վարձկան թուրք զորքի հրամանատար Բուղայի գլխավորությամբ, որը հրով ու սրով և գերեվարությամբ ասպատակեց Վասպուրականը, ապա Արարատյան դաշտը՝ Դվինի կենտրոնով։ 853 թ. Բուղայի զորքերը մեծ կորուստների գնով ճնշեցին նաև Սյունիքի դիմադրությունը։

Հայաստանում մեծամեծ կորուստներ կրած և թուլացած արաբական բանակը ներխուժեց Վրաստան և Տփղիսը հրկիզելուց ու գրավելուց հետո շարժվեց հյուսիս, որտեղ Կազբեկ լեռան ստորոտում բնակվող ծանարների դեմ մղած լեռնային մանր կռիվներում ծանր հարվածներ կրելով ետ քաշվեց։ Գարդմանում և Ուտիքում ունեցած մասնակի հաջողություններից հետո արաբական բանակը խուժեց Արցախ՝ հանդիպելով համառ և տևական դիմադրության։ Հատկապես զորեղ էր Արցախի Եսայի՝ արաբների կողմից Աբու-Մուսե կոչված իշխանի դիմադրությունը, որը գնդեր կազմելով և պաշար կուտակելով, ամրացել էր Քթիշ լեռան վրա։ Բուղան փորձում է երկար պաշարումով և սովով կոտրել Արցախի հերոսների դիմադրությունը, սակայն մի տարի տևող պաշարումից և 28 ընդհարումներից հետո նրանք անընկճելի են մնում։ Կողմերի միջև բանակցություններ են սկսվում և վեճը լուծվում է խալիֆի խարդախ միջամտությամբ։ Աբու-Մուսեն ապստամբ չի ճանաչվում, բայց հրավիրվում է Սամառա և այլևս չի վերադառնում։

Բուղայի կրած պարտությունը ծանարների երկրում և արաբական զորաբանակի հիմնական մասի կլանված լինելը Քթիշ լեռան պաշարմամբ, շատ նպաստավոր եղան Վասպուրականի համար։ Այստեղ դեռ ամեն ինչ կորած չէր։ Նախարարներից շատերը մնում էին երկրում, նրանց զորքերը չնայած ցրված, սակայն ջախջախված չէին, իսկ ժողովուրդը պատրաստ էր զորավիգ լինել, և ապստամբությունն այստեղ կրկին բորբոքվեց։

Պարտությունը ծանարներից, անհաջողությունը Քթիշի տակ և Վասպուրականում ծավալվող ապստամբության նոր ալիքը հեղինակազրկեցին Բուղային։ 855 թ. խալիֆը նրան ետ կանչեց, որն իր հետ խալիֆայթ տարավ մի շարք իշխանների, այդ թվում և Սմբատ սպարապետին, որն այլևս իրեն պետք չէր։

Բուղայի վերադարձը նաև նրա փառքի մայրամուտը եղավ։ Չորս տարի տևած պատերազմներից հետո նա իր ետևում թողել էր շատ ավերակներ, հազարավոր հայերի և արաբ զինվորների դիակներ, բայց ոչ միայն չէր իրա-

8 Թովմա Արծրունի, էջ 210։

կանացրել Ջաֆր ալ-Մութավաքիլ խալիֆի քաղաքական ծրագիրը, այլև դըժվար էր ասել, թե նա հաղթանակով էր վերադարձել։

Երեկվա հզոր զորավարը, որի ահից դողում էր անգամ խալիֆի արքունիքը, շնորհազրկված էր, նշանակված Խորասանի կառավարիչ, որին, սակայն, դեռևս տեղ չհասած, պիտի դավադրաբար սպանեին։

850—851 թթ. ապստամբությունը և դրան հետևած քառամյա պատերազմները, որոնք ուղեկցվում էին փոփոխակի հաջողություններով, ոչ միայն չամրապնդեցին արաբական տիրապետությունը Հայաստանում, Վրաստանում և Աղվանքում, այլև երևան բերեցին խալիֆաթի կատարյալ անկարողությունը։ Բուղայի քառամյա կռիվները, փաստորեն, խալիֆաթի վերջին ամենախոշոր, բայց ապարդյուն ճիգերն էին՝ զսպելու հայերի և նրա հարևանների անհնազանդությունը։

Վրաստանը և Աղվանքը անընկճելի մնացին, իսկ Հայաստանը, չնայած դաժան ավերին ու սրածությանը, պահպանեց իր դիմադրական ուժը։ Վասպուրականը դեռևս պարզած էր պահում ապստամբության դրոշը, Սյունիքում, որը քիչ էր տուժել, զորեղացել էին Բագրատունիներին դաշնակից իշխանները, իսկ Շիրակը և Բագրատունիների մյուս տիրույթները, որոնք շատ ընդարձակ էին, զերծ մնացին ասպատակությունից ու ավերից և ապահովեցին Բագրատունիների տնտեսական և քաղաքական գերակշռությունը մրցակիցների նկատմամբ։

Բուղայի հեռանալուց հետո Հայաստանը շուտով ամոքեց իր վերքերը. անկախության ձգտումը ավելի զորեղացավ։ Արաբական խալիֆաթն ընդհանրապես, շարունակում էր թուլանալ։ Նրա կազմալուծումը գնալով խորանում էր։ Այդ հսկայածավալ տերությունը զուրկ էր տնտեսական, ցեղային, քաղաքական միասնությունից, այլևս չէր կարող զսպել իր տիրապետությանը ենթակա ժողովուրդների ապստամբական տրամադրությունները և հնազանդության մեջ պահել նրանց։

Երբեմնի ռազմական հզորությունը կորցրած խալիֆաթը, մյուս կողմից էլ, մշտապես մրցակցում և ռազմական ընդհարումներ էր ունենում իր դարավոր ախոյան Բյուզանդական կայսրության հետ։ IX դարի կեսերին այդ երկու տերությունների ուժերը համարյա հավասարակշռվել էին, ուստի հայկական ռազմական ուժերի անցումը մեկի կամ մյուսի կողմը կարող էր խոշոր նշանակություն ունենալ։ Արաբներին մնում էր, ինչ գնով էլ լինի, պահպանել իրենց տիրապետությունը Հայաստանում և կանխել նրա բյուզանդական կողմնորոշումը։ Մինչդեռ Հայաստանը ձգտում էր օգուտ քաղել երկու ախոյան տերությունների նմանօրինակ փոխհարաբերություններից։

Շատ ավելի կարևոր էին Հայաստանում տեղի ունեցող այն հասարակական-տնտեսական երևույթները, որոնք հող էին նախապատրաստում երկրի անկախության վերականգնման համար։

Արաբները VIII դարում նկատելիորեն խախտել էին տեղում հաստատված ֆեոդալական ժառանգական հողատիրության կարգը՝ դրան տալով առավելապես պայմանական հողատիրության բնույթ, իսկ հայկական նախարարական տները մասամբ ոչնչացել էին, մասամբ էլ գաղթել բյուզանդական կայսրության սահմանները։ Սակայն IX դարի սկզբներից տեղի էր ունենում հողային տիրույթների վերականգնման և վերաբաշխման սուր և համառ պայքար, որը հանգեց ժառանգական հողատիրության ամրապնդման և աննախըն-

թաց խոշորացման։ Նախկինում գոյություն ունեցող տասնյակ ֆեոդալական տների տեղը բռնեցին միայն մի քանիսը, որոնցից առավել խոշոր և հզոր էին Բագրատունյաց, Արծրունյաց և Սյունյաց իշխանական տոհմերը։ IX դարի առաջին կեսում որոշիչ գերակշռություն են ստանում Բագրատունիները։

Բացի Սպեր և Կոգովիտ գավառներից, որոնք արդեն իրենց էին պատկանում, նրանք քայլ առ քայլ տիրում են Հայաստանի զգալի մասին։ Դեռևս 783 թ. Աշոտ Մսակերը և իր եղբայր Շապուհը Կամսարական նախարարական տոհմից գնեցին Արշարունիքը։ Կամսարական, ինչպես նաև Մամիկոնյան հզոր տոհմերի թուլացումը և անհետացումը պատմության թատերաբեմից մեծապես նպաստեցին Բագրատունիների բարձրացմանը[9], որին չկարողացավ խանգարել խուռամյանների ապստամբությամբ բռնված խալիֆաթը։ IX դարի երկրորդ տասնամյակում Բագրատունիների ձեռքն է անցնում նաև Մամիկոնյանների հայրենի տիրույթ Տարոնը. որտեղ հաստատվում է Աշոտ Մսակերի որդի Սահակը, իսկ Մամիկոնյանների մի շառավիղը հաստատվում է Բագրեանդում[10]։

Արշարունիքին տիրանալու հավակնություն ունեցող արաբ իշխանավոր Աբդուլ ալ-Մալիք-իբն Ջահաֆի (հայ աղբյուրներում Ջահապ) ոտնձգությունները վերջացան նրա կատարյալ պարտությամբ։ Աշոտ Մսակերը ջախջախեց Ջահաֆի զորքերը և ոչ միայն վերադարձրեց Արշարունիքի իրենից խլված մասը, այլև տիրացավ Շիրակին, Տայքին և Աշոցքին[11]։

Բագրատունիների մի ճյուղն էլ հաստատվել էր Վրաստանում, Ատրներսեհի որդի Աշոտ Բագրատունու գլխավորությամբ, որը 775 թ. ապստամբության մասնակից Վասակ Բագրատունու թոռն էր։ Աշոտը ստեղծեց մի ընդարձակ իշխանություն, միավորելով Կղարջքը, Կողբիսը, Շավշեթը և այլ հողեր, կենտրոն ունենալով Արտանուջ քաղաքը[12]։

Բագրատունիները արդեն ներկայացնում էին տնտեսական, ռազմական և քաղաքական մի ուժ, ընդունակ գլխավորելու հայկական պետականության վերականգնման համար մղվող պայքարը և իրենց շուրջը համախմբելու մյուս իշխաններին։

## 2. Հայոց թագավորության վերականգնումը

Բուղայի արշավանքից հետո խալիֆաթին պարզ դարձավ, որ անհնարին է հաշվի չնստել հայոց երկրի, մանավանդ Բագրատունիների հետ։ Այս պայմաններում է, որ սպարապետական պաշտոնը 855 թ. անցնում է Սմբատի որդի Աշոտին, որը խաղաղ և ավելի նպաստավոր պայմաններում շարունակում է վարել երկրի վարչական և զինվորական իշխանությունն իր ձեռքում կենտրոնացնելու քաղաքականություն։ Շուտով մի հարմար առիթ պետք է նպաստեր Աշոտին՝ ընդարձակելու իր տիրույթները։ Արաբական գերությունից փախչելով, Գրիգոր Մամիկոնյանը վերադառնում է Բագրևանդ։ Արաբ իշխանավորները, իրենց բարքերի համեմատ, վարձատրություն են նշանակում

[9] Ghazarian M., "Armenien unter der arabischen Herrschaft, Marburg, 1903, էջ 193։

10 Լեո, Հայոց պատմություն, հատ. Բ, էջ 424։

11 Վարդան վարդապետ, Հաւաքումն պատմութեան, Վենետիկ, 1862, էջ 76։ Այսուհետև՝ Վարդան վարդապետ։

12 «Քարթլիս ցխովրեբա», 441, էջ 219։ Վարդան վարդապետ, էջ 77։

Գրիգորին սպանողին, որպեսզի նրա կալվածքները հայտարարվեն հարքունիս գրավված։ Դվինում նստող արաբական ոստիկանը, որը մեծ զորք չուներ, բայց պահպանում էր երկրի վերահսկողության իրավունքը, հրամայում է Աշոտին՝ ձերբակալել Գրիգոր Մամիկոնյանին։ Վերջինս, սակայն, վերադարձից յոթ օր անց վախճանվում է։ Այսպիսով, Աշոտը ազատվում է ոչ միայն հնարավոր ախոյանից և Մամիկոնյան իշխանի հետ ընդհարվելու անցանկալի հարկադրանքից, այլև ձեռք է բերում Մամիկոնյանների վերջին տիրույթը՝ Բագրևանդ գավառը[13]։ Բագրատունիների տիրույթները այնքան էին ընդարձակվել, որ բռնում էին Հայաստանի մի խոշոր մասը՝ իրենց սահմաններում ունենալով Շիրակը, Վանանդը, Կոգովիտը, Բագրևանդը, Տարոնը, Սասունը, Վասպուրականի մի մասը և Մոկաց աշխարհը։ Նրանց ազդեցությունը տարածվում էր նաև Այրարատի կենտրոնական և հյուսիսային գավառների և այլ վայրերի վրա։ Աշոտ սպարապետի հեղինակությունը ճանաչված էր Վասպուրականի, Սյունիքի, ինչպես նաև Վրաստանի ու Աղվանքի շատ իշխանների կողմից[14]։ Նրան հարեցին նաև 857—859 թթ. գերությունից վերադարձած հայ իշխանները։

Հայկական պետականության վերականգնման համար նպաստավոր պայմաններ էին ստեղծվել նաև տնտեսական առումով։ Երկրի բնակչությունը, օգտվելով 855 թ. հետևած երեք տասնամյակ տիրող խաղաղությունից, շենացնում էր երկիրը, մշակում դաշտերն ու այգիները, հոտերով և նախիրներով ծածկում լեռներն ու արոտները, զարգացնում արհեստներն ու առևտուրը։ Վերակենդանանում էին նաև հին քաղաքները, առաջանում նորերը։ Այս ամենի շնորհիվ մեծանում էր երկրի տնտեսական և ռազմական զորությունը։ Մինչդեռ Արաբական խալիֆաթի կազմալուծումը անդառնալիորեն խորանում էր։ Կենտրոնական կառավարությունը համարյա կորցրել էր իր իշխանությունը անկախության կամ անջատման ձգտող ծայրամասերի վրա։ Կենտրոնում վտանգավոր ուժ էր դարձել թուրքական վարձկան զինվորությունը, տեղի էին ունենում գահակալական խժդժություններ։ Գահ բարձրացած խալիֆ Ահմադ ալ Մուսթայինը 862—866 թթ. ոչինչ չկարողացավ անել խալիֆաթի քայքայումը կանխելու համար։ Աշոտ Բագրատունին շտապեց օգտագործել այս նպաստավոր իրադրությունը։ 859 թ. Հայաստանի ոստիկան նշանակվեց Ալի իբն Յահա անունով մեկը, որն ի դեպ, հայկական ծագման համար կոչվում էր ալ-Արմանի։ Հայ իշխանների պնդումով սա միջնորդեց խալիֆի առաջ, որը Աշոտ Բագրատունուն ճանաչեց Հայաստանի իշխանաց իշխան։ 862 թ. Աշոտին հանձնվեց նաև ամբողջ երկրի հարկահանությունը «ասակս հայոց և ամենայն բեկար աքունին»,— ասում է Հովհաննես կաթողիկոսը[15], որով վճռականապես փոխվեց արաբական հարկահանության բռնություններով, կամայականություններով և կողոպուտներով ուղեկցվող կարգը։ Նվազեց նաև երկրից գանձվող հարկերի քանակը։ VIII դարի վերջերի 13 միլիոն դիրհեմի փոխարեն, IX դարի կեսերին, ինչպես վկայում է իբն Խորդադբեն, Հայաստանը վճարում էր 4 միլիոն դիրհեմ։ Ստացվող եկամուտների մեծագույն մասն այժմ մնում էր երկրում. նպաստելով նրա վերելքին ու բարգավաճմանը։

---

13 Վարդան վարդապետ, էջ 81։

14 Թովմա Արծրունի, էջ 335։ Վարդան վարդապետ, էջ 85։

15 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 133։

Աշոտը, ստանձնելով երկրի փաստական կառավարումը, Աբասին, որը քաջ զորավար էր, նշանակեց սպարապետ։ Շուտով Բագրատունիների բանակն աճեց և զինվորների թիվը հասավ 40 հազարի։ Այսպիսով, թեև տակավին արաբական տիրապետության և ոստիկանի վերահսկողության ներքո, Բագրատունիների ձեռքում կենտրոնացավ երկրի ինչպես վարչական ու ռազմական, նույնպես և տնտեսական իշխանությունը։ Հսկայական նշանակություն ուներ նաև այն փաստը, որ երկրի իշխանաց իշխանի և սպարապետի պաշտոնը, որը դրանից առաջ գտնվում էր Բագրատունիների տոհմի երկու (Տարոնի և Շիրակի) իրար մրցակից ճյուղերի ձեռքում, այժմ միայն Շիրակի Բագրատունիների ձեռքն անցավ։ Արաբական տիրապետությունն այնուհետև ձևական բնույթ էր կրում։ Աշոտի իշխանությունը ճանաչում էին համարյա բոլոր հայ իշխանները։ Խոսելով Աշոտի իշխանաց իշխան դառնալու մասին, Հովհաննես կաթողիկոսն ասում է. «Եվ այսպես Հայոց բոլոր նախարարներից ամենապատվականը և առաջինը նա եղավ, և ամենքը դաշինք էին կապում նրա հետ՝ որպես իսկական թագավորազնի հետ։ Այլև բոլորի մտքում կար, որ եթե հարկավոր դեպքը վրա հասնի, որ նաև նրա տոհմը՝ արժանի լինի թագավորական տոհմերի շարքը դասվելու (ապա) նրանից պետք է ընտրել այլ նախարարական տոհմերի միջից»[16]։

Աշոտի դերը և նրա իշխանության նշանակությունը լավ էր հասկանում նաև Բյուզանդական կայսրությունը։ Հայ ժողովրդին իր կողմը թեքելու նպատակով, նա դավանաբանական հարց բարձրացրեց հայկական եկեղեցին բյուզանդականի հետ միավորելու համար։ Այս առթիվ Փոտ պատրիարքը համապատասխան նամակով դիմում է Աշոտին և չի զլանում շռայլել մեծարանքի հետևյալ խոսքերը. «Քաջայայտդ բարեպաշտութեամբ, հզօրագոյնդ ճոխութեամբ, բարձրագոյնդ ի համասեռս, Աշոտ իշխանդ Հայոց Մեծաց... ով վսեմագոյնդ»[17]։

Շիրակավանում գումարված եկեղեցական ժողովի որոշման համաձայն Աշոտը մերժում է դավանաբանական միավորման առաջարկը, միաժամանակ հարգալից եղանակով հասկացնում, որ կողմնակից է քաղաքական դաշինքի կայսրության հետ[18]։

Աշոտ Բագրատունին ծավալում է եռանդուն գործունեություն, հատուկ ուշադրություն է դարձնում բանակի ամրապնդման և զինավառության վրա, վերականգնում է ավերված բերդերը։ Շատ չուտով նաև առիթ ստեղծվեց ցուցադրելու հայկական բանակի ուժն ու զորությունը։ Աշոտի իշխանաց իշխան դառնալուց մի տարի էր անցել, երբ արաբ իշխանավոր Սևադայի որդի Ջահապը փորձեց չափվել Բագրատունիների հետ և խլել նրանց տիրույթների մի մասը։ Այդ նպատակով նա մեծ զորքով մտավ Արշարունիք և եկավ հաստատվեց Արաքսի աջ ափին՝ Քառասունք կոչված վայրում։ Այստեղ՝ Կաղզվանի մոտ, նրա վրա հարձակվեց Աբաս սպարապետը՝ 40 հազար զորքով և գլխովին ջախջախեց նրան։ Պատմիչի ասելով, Շահապին (իմա՝ Ջահապին) հազիվ հաջողվեց փախչել 26 մարդկանցով և փրկել գլուխը[19]։

16 Նույն տեղում։
17 «Գիրք թղթոց», էջ 279—281։
18 Նույն տեղում, էջ 293—294։
19 Ասողիկ, Պատմություն տիեզերական, Պետերբուրգ, 1885, էջ 110։ Այսուհետև՝ Ասողիկ։

Աշոտը մեծ ջանքեր գործադրեց հայ նախարարների միջև ծագած գժտությունները վերացնելու և իր իշխանությունը նրանց վրա ամրապնդելու ուղղությամբ։ Շուտով նա Զաքարիա կաթողիկոսի հետ մեկնեց Վասպուրական միջամտելու Արծրունի իշխանների գժտություններին։ Գործն ավարտվեց խաղաղությամբ և խնամիական կապերի հաստատմամբ։ Աշոտն իր դուստրը կնության տվեց Վասպուրականի Դերենիկ գահերեց իշխանին[20]։ Իշխաններին իր շուրջը համախմբելու և դաշինք հաստատելու նպատակով նա իր Մարիամ անունով աղջկան էլ ամուսնացրեց Գեղարքունիքում իշխող Սյունյաց Վասակ Գաբուռ իշխանի հետ[21]։ Քաղաքական բնույթի այս ամուսնությունները նպատակ ունեին ամրապնդելու իշխանաց իշխանի դիրքերը երկրում։ Երբ գերությունից վերադարձավ Վասպուրականի գահերեց Աշոտ իշխանը և Արծրունյաց իշխանների միջև նոր գժտություններ ու ընդհարումներ ծագեցին, դարձյալ միջամտողը և խաղաղություն վերականգնողը իշխանաց իշխան Աշոտ Բագրատունին էր, որի հեղինակությունը հանրաճանաչ էր դարձել։ Խոսելով Աշոտի մասին, Ստեփանոս Տարոնեցին վկայում է, որ սա, նախքան թագավոր դառնալը, երեսնամյա մի միջոց եղել է «իշխան իշխանաց, իշխան Հայոց և Վրաց և յաղթող ամենայն ազգացս շուրջանակի»։

Աշոտ իշխանաց իշխանը շուտով պիտի միջամտեր նաև վրաց գործերին։ Կղարջքի Աշոտ կյուրապաղատի մահից հետո արաբները խլել էին Քարթլին։ Աշոտի որդի Բագրատը ետ ստացավ այն, իսկ մյուս որդին՝ Գուարամը իր իշխանությանը միացրեց նաև Ջավախքը, Թռեղքը (Թրիալեթ), Տաշիրը, Աշոցքը (Աբոց) և Արդահանը (Արտան)[22]։ Բագրատի մահից (876) հետո Թռեղքում հաստատվեց վրացի իշխան Լիպարիտը, իրեն հովանավոր ճանաչելով Բագրատի որդի Դավթին, իսկ Աբխազաց թագավորը գրավեց Քարթլին։ Հենց այս կռիվներին էր, որ միջամտեց Աշոտ իշխանաց իշխանը և զորքով մտավ Քարթլի։ Վրաց Դավիթ և Լիպարիտ իշխաններն անցան նրա կողմը, իսկ Գուարամը՝ Աբխազաց թագավորի կողմը։ Աշոտի գերակշիռ ուժերն ու հեղինակությունը օգնեցին վերջ դնելու ծագած կռիվներին։ Հաշտություն և բարեկամություն հաստատվեց նաև Աշոտի ու Գուարամի միջև։ Աշոտի քույրը կնության տրվեց Գուարամին, իսկ վերջինս իշխանաց իշխանին զիջեց Աշոցքը[23]։

Այս ժամանակ արաբական վարչական միավոր Արմինիայի ոստիկան Իսա իբն-Շայխը Պարտավի քաղաքապետ էր նշանակել Մահմեդ Էբյուլվերին (հայ աղբյուրներում՝ Եմնիկ Մահմեդ որդի Ապլվիտա), որը խռովություն բարձրացրեց ոստիկանի դեմ։ Վերջինս փորձեց Աշոտ իշխանաց իշխանի օգնությամբ նրան ճնշել, բայց Աշոտը չընդառաջեց։ Նշանակված լինելով Միջագետքի կուսակալ, Իսա ոստիկանը գնաց իր պաշտոնավայրը, իսկ Մահմեդ Եմենիկը ինքը կամեցավ դառնալ Արմինիայի ոստիկան։ Սակայն հայ իշխանները, Աշոտ Բագրատունու գլխավորությամբ, մերժեցին նրա հավակնությունները և խալիֆին խնդրեցին ոստիկան ուղարկելու Ահմադ իբն Խալիդին (հայ աղբյուրներում՝ Ահմադ որդի Հալթի), որը քիչ առաջ վարել էր այդ պաշտոնը։ Խալիֆը ընդառաջեց հայերի պահանջին, և ոստիկան նշանակված Ահմադը Բաղեշի

20 Թովմա Արծրունի, էջ 334—356։
21 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 135։
22 Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները, հատ. Ա, Երևան, 1934, էջ 20։
23 Նույն տեղում, էջ 201։

վրայով հասավ Դատվան, որը արաբների սեփական ժառանգությունը կազմող մի ավան էր Վանա լճի արևմտյան ափին։ Այստեղ, գահերեց իշխան Գրիգոր Դերենիկի գլխավորությամբ, նրան նվերներով դիմավորեցին Վասպուրականի մի քանի իշխաններ, Տարոնի Աշոտ Կյուրապաղատը, Պարտավի տեր Եմենիկ Մահմեդի պատվիրակները, Մոկաց իշխան Մուշեղ Բագրատունին և ուրիշներ։ Ինքը՝ Աշոտ իշխանաց իշխանը, ուղարկել էր իր կրտսեր եղբորը՝ Շապուհին, հարկ չհամարելով անձամբ ներկայանալ նոր ոստիկանին։ Դատվան էին եկել նաև Մանազկերտի կայսիկ ամիրա Աբլվարդը (Թովմայի մոտ՝ Ապլբառ) և հարավի այլ արաբ իշխանավորներ։

Դատվանում Ահմադր, Եմենիկ Մահմեդի ներկայացուցիչները, Աբլվարդը և արաբ մյուս իշխանավորները դավադրություն ծրագրեցին, որի նպատակն էր կոտորել հայ նախարարներին, վերացնել հայ իշխանությունները և ամբողջովին տիրանալ երկրին։ Դավադրության ծրագրի համաձայն նոր ոստիկան Ահմադը Պարտավի ամիրա Եմենիկ Մահմադին նամակ ուղարկեց, որի մեջ, Թովմա Արծրունու ասելով, գրում էր. «Երբ ես մտնեմ Դվին քաղաքը և արքունի հարկը գրավեմ և հայոց իշխանների կասկածները փարատեմ, և երբ նրանք մոտս գան՝ դու ճակատամարտի պատրվակով իմ վրա զորք գումարիր և դուրս արի իմ դեմ պատերազմի, և միասին սրանց մեր ձեռքը կգցենք և կըզրկենք Հայաստանը իշխանությունից»[24]։

Սակայն Աշոտ իշխանաց իշխանը, որը հեռատես պետական գործիչ էր, բոլոր ճանապարհների, կամուրջների վրա ու ձորերում դրել էր իր հետախույզներին, որոնք բռնում են Մահմեդին ուղարկված նամակը։ Դատվանում Աբլվարդը և մյուսները հայ իշխաններին իրար հետ կովեցնելու նպատակով դիմում են բանսարկությունների, որ իբրև թե, հայ իշխանները կամենում են վնասել ոստիկանին։ Դերենիկ Արծրունուն էլ հայտնում են, թե Աշոտ Կյուրապաղատը նրան չարախոսել է ոստիկանի առջև, կամեցել է նրան իշխանությունից զցել և նման այլ բաներ։ Վասպուրականի իշխանները հասկանալով, որ դավադրություն է պատրաստվում, որսի դուրս գալու պատրվակով հեռանում են իրենց երկիրը։ Նույն միջոցին է դիմում նաև Աշոտ Կյուրապաղատը, բայց Դերենիկ Արծրունին կալանավորել է տալիս նրան, և Տարոնի իշխանությունը անցնում է Բագարատի մյուս որդուն՝ Դավթին։ Դատվանից հեռանում են նաև մյուս իշխանները, իսկ Ահմադը կայսիկ զորքի ուղեկցությամբ գալիս է Դվին՝ հույս ունենալով իրականացնել ծրագրված դավադրությունը։ Աշոտ իշխանաց իշխանը, ձևացնելով, թե ոչնչից տեղյակ չէ, նվերներով գալիս է Դվին, միաժամանակ եղբորը՝ Աբաս սպարապետին պատվիրում է զորքով մտնել քաղաք՝ դավադրությունը ճնշելու պատրաստությամբ։

Ահմադ-իբն Խալիդը տարակուսանք չունենալով իր դավադրության հաջողության վերաբերյալ, ավելի էր գոռոզացել։ Մի օր էլ, երբ նա շքեղ վրանում բազմած մեծամեծերից պատիվներ էր ընդունում, սպասելով նաև Աշոտ իշխանաց իշխանին, վերջինիս փոխարեն ներս է մտնում Աբաս զորավարը և նրան է պարզում Մահմեդին ուղարկված նամակը։ Խարդախ ոստիկանը թակարդն էր ընկած։

Ոստիկանի և կայսիկյան ամիրայի զորքերը զինաթափ են արվում և ազատ արձակվում, իսկ Ահմադին նժույգի փոխարեն ջորու վրա նստեցրած իշխանաց

---

24 Թովմա Արծրունի, էջ 353։

իշխանի որդի Շապուհը իր զորքով տանում է մինչև Միջագետքի սահմանը և ազատ արձակում, ասելով՝ «գնա այնտեղ, որտեղից եկել էիր»[25]։

Այսպիսի անփառունակ վախճան ունեցավ արաբական տիրապետությունը Հայաստանում, որն ավելի քան երկու դար տևեց։ Պատմական այս եղելության նշանակությունը շատ մեծ էր։

Հավանական է, որ այս անցքերը տեղի են ունեցել 874—875 թթ.։ Աշոտ իշխանաց իշխանը, այնուհետև, առանց ժամանակ կորցնելու, ջանքեր է գործադրում ամրապնդելու իր իշխանությունը երկրի հյուսիսային մասերում։ Վրաց Կյուրապաղատի որդի Գուարամի միջոցով, որն իր քրոջ ամուսինն էր. Աշոտը ձերբակալել տվեց Թիֆլիսի արաբ ամիրային։ Այնուհետև իշխանաց իշխանը միջոցներ ձեռք առնելով Եմենիկ Մահմեդի դեմ, շարժվում է դեպի Հարավ, հնազանդեցնում Բերկրիի և Խլաթի ամիրաներին, ապա պաշարում Մանազկերտը։ Բայց իմանալով, որ Վասպուրականում ծագած ներքին գժտությունները խորացել են և վտանգ է սպառնում գահերեց իշխան և իր փեսա Դերենիկի կյանքին, նա շտապ հաշտություն է կնքում Մանազկերտի Աբլվարդ ամիրայի հետ և ուղղվում Վասպուրական, որտեղ Գևորգ կաթողիկոսի հետ միասին, խաղաղությամբ վերջ է տալիս Վասպուրականի իշխանների, ինչպես նաև նրանց ու Տարոնի կյուրապաղատի միջև ծագած գժտություններին։ Թովմա Արծրունին, թեև Վասպուրականի Արծրունիների տոհմական պատմիչն է, մեծ դրվատանքով է խոսում իշխանաց իշխան Աշոտ Բագրատունու մասին, ասելով, որ նա «բարձրագույն և հանճարեղագույնն էր, քան զբնաւ Հայաստանեայս»[26]։ Իսկ Հովհաննես կաթողիկոսը ասում է, որ ամենքը Աշոտի հետ դաշինք էին կնքում իբրև թագավորազնի հետ[27]։ Դեռևս 870-ական թթ. ինչպես տեսնում ենք Սևանի 874 թ. արձանագրության մեջ, Աշոտ Բագրատունին հայ նախարարների կողմից ճանաչված էր թագավոր Հայոց, իսկ Գառնիի 879 թ. արձանագրության մեջ նրա տիկինը՝ Կատրանիդեն, կոչված է Հայոց թագուհի։

Բյուզանդական կայսրությունն էլ շուտով դաշինք է առաջարկում Աշոտին։ Բյուզանդիայում 867 թ. գահ էր բարձրացել ծագումով հայ Վասիլ Ա կայսրը, որը այսպես կոչված Մակեդոնական հարստության (867—1057) հիմնադիրը եղավ։ Հովհաննես կաթողիկոսը վկայում է. «Այլ և հունաց Բարսեղ մեծ կայսրը խաղաղության և հաճության և սիրո փոքր պայման չէր, որ հաստատեց մեր արքա Աշոտի հետ»[28]։ Վասիլ Ա կայսրը, որը ուշի ուշով հետևում էր Հայաստանի զորեղացմանը և ինքնուրույնության վերականգնմանը, 876 թ. Հայաստան ուղարկեց Նիկիտ անունով պալատականին և Աշոտ Բագրատունուն խնդրեց հայ Արշակունիների ժամանակների ավանդությամբ, իբրև թագադիր ասպետ, թագ ուղարկելու իրեն՝ Վասիլին։ Այդ ավանդական սովորության հանկարծակի վերհիշմամբ կայսրը ձգտում էր իր գերադասությունը պարտադրել Աշոտին, միաժամանակ բարեկամական դաշինք ստեղծել երկու երկրների միջև։ Տվյալ պարագաներում այդ դաշինքը օգտակար էր թե՛ մեկ, և թե՛ մյուս կողմին, քանի որ ապահովում էր Վասիլի ժամանակ ուժեղացած Բյուզանդիայի կատարյալ գերակշռությունը խալիֆաթի նկատմամբ, իսկ հայերին էլ օժան-

25 Նույն տեղում, էջ 358—359։

26 Նույն տեղում, էջ 357։

27 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 133։

28 Նույն տեղում, էջ 140։

դակում էր ավելի վճռական լինել երկրի անկախությունը վերականգնելու իրենց ձգտման մեջ։ Մինչդեռ արաբական խալիֆաթը ապրում էր ծանր ճգնաժամ. ապստամբություններ էին բռնկվել խալիֆաթի ծայրամասերում՝ Եգիպտոսում, մանավանդ Արևելյան Իրանում, անգամ խալիֆաթի կենտրոնական նահանգներում՝ օրինակ Բասրայում։

Այս նպաստավոր պայմաններում Աշոտ Բագրատունու իշխանությունը ավելի էր ամրապնդվել և նրան «չէր ինչ պակաս՝ բայց ի թագէ...»[29]։ Եվ ահա իշխանները, որոնք համախմբված էին Աշոտ իշխանաց իշխանի շուրջը, միջնորդեցին խալիֆի առջև՝ Աշոտին թագավոր ճանաչելու։ Հայոց նախարարները միաբանությամբ խորհուրդ անելով թագավորեցնելու նրան (Աշոտին) իրենց վրա, զեկուցում են ամիրապետին (խալիֆին) Շեյխի որդի Հիսեի միջոցով[30]։ Անցքերին ժամանակով մոտիկ Հովհաննես կաթողիկոսի և Ստեփանոս Օրբելյանի վկայությամբ խալիֆի առաջ միջնորդել և Աշոտին թագավոր են դարձրել Սյունյաց և Արծրունյաց իշխանները, հայոց մյուս իշխանների հետ միասին[31]։ Այս տեղեկությունները կարևոր են նաև նրանով, որ վկայում են Բագրատունիներին մրցակից երկու նախարարական տների՝ Արծրունիների և Սյունյաց նախարարների համերաշխությունը Աշոտի հետ։

Մութամիդ խալիֆը չէր կարող մերժել հայ իշխանների միահամուռ պահանջը, դրա համար նա բավարար չափով ուժեր չուներ։ Բացի այդ, մերժումը կլիներ անզգույշ քայլ, որը հայերին ամբողջովին կմղեր Բյուզանդիայի կողմը։ Ստեղծված պայմաններում խալիֆին մնում էր մի ելք՝ ճանաչել Աշոտին հայոց թագավոր՝ պահպանելով թեկուզ իր անվանական գերիշխանությունը երկրում։ Հովհաննես Դրասխանակերտցին վկայում է, որ նույն Իսա իբն Շեյխն էր, որը խալիֆից Աշոտին բերեց թագ, նաև թագավորական զգեստներ, պարգևներ, պատիվներ և նժույգներ՝ զենքերով ու զարդերով[32]։ 884 կամ 885 թ. հավաքվում են երկրի իշխանները, Գևորգ կաթողիկոսը և հանդիսավոր կերպով թագադրում Աշոտին[33], որին շտապեց Հայաստանի թագավոր ճանաչել նաև դաշնակից Բյուզանդիան։

Արշակունյաց թագավորության անկումից (428) մոտ չորս և կես դար անց վերականգնվում է հայկական պետականությունը և Բագրատունի թագավորների իշխանությունը տարածվում է երկրի մեծագույն մասի վրա։ Հայաստանից անջատվել էին միայն արևմտյան գավառները, որոնք մտել էին Բյուզանդական կայսրության կազմի մեջ և հարավ-արևմտյան գավառները, որոնք միացված էին Միջագետքի արաբական իշխանությանը։ Այդ ժամանակներում Հայոց թագավորի վարչա-քաղաքական իրավասությանը ենթակա էին նաև Արևելյան Վրաստանը և Աղվանքի մի մասը, քանի որ մինչև թագավոր դառնալը Աշոտը արաբական Արմինիա վարչական միավորի իշխանաց իշխանն էր։

Աշոտ Բագրատունու թագադրությունը, Ահմադ ոստիկանին երկրից վտարելուց հետո, Հայաստանի փաստորեն վերականգնված անկախության իրա-

29 Վարդան վարդապետ, էջ 85։
30 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 139։
31 Ստ. Օրբելյան, էջ 175։
32 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 139։
33 Աշոտ Ա-ի թագավորության տարեթվի առթիվ տե՛ս «Մանր ժամանակագրություններ XIII—XVIII դարերի», կազմեց Վ. Ա. Հակոբյանը, հատ. 2, Երևան, 1956, էջ 156—162։

վական ճանաչումն էր՝ խալիֆաթի և Բյուզանդիայի կողմից։ Լինելով պետական խոշոր գործիչ և նրևան բերելով ռազմա-քաղաքական, տնտեսական և դիվանագիտական մեծ ձեռներեցություն, Աշոտ արքան հետագայում էլ ավելի ամրապնդեց իր թագավորությունը։

Ամփոփելով, հարկ է նկատել, որ հայկական պետականության վերականգնումը ունեցավ իր ներքին, ինչպես և արտաքին նախադրյալներն ու պատճառները։ Դրանցից առավել կարևորներն էին՝ ժառանգական հողատիրության վերականգնումը նոր հիմունքներով, հայկական հողերի զգալի մասի անցումը Բագրատունիների ձեռքը, որին դեռևս Արաբական խալիֆաթի տիրապետության պայմաններում քայլ առ քայլ հետևեց երկրի տեղական վարչական, զինվորական և հարկային-տնտեսական իշխանությունների կենտրոնացումը նույն Բագրատունիների ձեռքում։

Խոշոր նշանակություն ունեցավ IX դարի կեսերից երկրում սկսված տընտեսական վերելքը՝ արհեստագործության, ներքին և արտաքին առևտրի զարգացումը, ֆեոդալական քաղաքի ձևավորումը, որոնց շնորհիվ ստեղծվում էին նյութական պայմաններ հայկական զորաջոկատների և համահայկական զինվորական վարչությանը՝ սպարապետությանը ենթակա բանակի թվական աճի ու սպառազինվածության ապահովման համար։ Հայ ժողովրդի մղած ազատագրական պայքարը, որին մասնակցում էին հասարակության բոլոր խավերը, ձեռք էր բերել անխորտակելի ուժ, ուստի այն ճնշելու Արաբական խալիֆաթի մեջից փորձեցին ձախողվեցին, հանդիպելով ոչ միայն Հայաստանի, այլև Վրաստանի ու Աղվանքի ժողովուրդների համառ դիմադրությանը։

Հայ ժողովրդի ազատագրական պայքարը և հայ պետականության վերականգնումը տեղի էին ունենում Արաբական խալիֆաթի անկման պայմաններում, երբ խալիֆաթը կորցրել էր իր երբեմնի հզորությունը և արդեն սկսվել էր նրա անխուսափելի կազմալուծումը։ Բացի այդ, Արաբական խալիֆաթի և Բյուզանդական կայսրության դարավոր մրցության մեջ կշեռքի նժարը թեքվել էր վերջինիս կողմը։ Բյուզանդական կայսրությունը, հայերին դաշինք առաջարկելով, մի կողմից ձգտում էր ապահովել իր վճռական գերակշռությունը խալիֆաթի նկատմամբ, մյուս կողմից փորձում էր իրականացնել Հայաստանը իբրև կրտսեր զինակից իրեն ենթարկելու վաղեմի մտադրությունը, մինչդեռ հայերը Աշոտ Բագրատունու գլխավորությամբ կարողացան արաբա-բյուզանդական հակամարտություններն օգտագործել հայկական պետականության վերականգնման համար մղվող պայքարում։

Արաբական խալիֆաթը ուրիշ ելք չուներ, ուստի պաշտոնապես ճանաչեց հայկական պետականության վերականգնումը։

## ВОССТАНОВЛЕНИЕ АРМЯНСКОЙ ГОСУДАРСТВЕННОСТИ В КОНЦЕ IX ВЕКА

Член-корр. АН Арм. ССР Б. Н. АРАКЕЛЯН

(Резюме)

В статье рассматриваются предпосылки и показывается процесс восстановления армянской государственности после перерыва, длившегося более четырех с половиной веков.

Восстановление на новых началах крупного наследственного землевладения и сосредоточение в руках владетельных князей Багратидов

значительной части земель Армении, новый экономический подъем страны, начавшийся процесс формирования феодального города, сокращение налогов, выплачиваемых Арабскому халифату, в условиях упадка и начавшегося разложения Арабского халифата создали условия для перехода власти к Багратидам.

Восстановление всеармянского административного ведомства (должности князя князей), военного ведомства (спарапетства) и армянского войска и их сосредоточение в руках Багратидов создали военно-политические предпосылки для восстановления армянской государственности. Этому способствовало и единодушие ведущих княжеских родов Армении—Арцрунидов и Сюнийских князей с князем князей Ашотом Багратуни, стремление которого восстановить армянскую государственность получило поддержку также со стороны ряда грузинских и агванских князей. Восстановлению царской власти в Армении способствовало и вековое соперничество между Арабским халифатом и Византийской империей и союз Ашота Багратуни с императором Василием I.

Ашот I Багратуни был признан царем Армении арабским халифом Мотамидом Биллах в 884—885 гг. Византийский император не замедлил признать Ашота Багратуни и прислал ему корону. Ашот I Багратуни проявлял незаурядную деятельность крупного полководца и государственного деятеля и упрочил свое царство.